Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 2 ՀՈՒՆՎԱՐ 1947

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 2 ՀՈՒՆՎԱՐ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹ

փել է մեր
ամ ամենաամուր

## ԲՈՎԱՆԴԱԿ...



---


Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 33—86։




# 23 ՏԱՐԻ ԱՌԱՆՑ ԼԵՆԻՆԻ, ՍՏԱԼԻՆԻ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՄԲ, ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

*23 տարի առաջ, 1924 թվականի հունվարի 21-ին Գորկիում (Մոսկվայի մոտ) դադարեց բաբախելուց մարդկության պատմության մեջ մեծագույն հանճարեղ մարդու, պրոլետարիատի մեծ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինի սիրտը։ Այդ մահը մեծ վիշտ պատճառեց ամբողջ աշխարհի պրոլետարիատին և մեր պարտիային։ Լենինի թաղման օրը ամբողջ աշխարհի պրոլետարիատը հայտարարեց բոլոր աշխատանքների դադար հինգ րոպեով։*

*Մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն 1924 թվականի հունվարի 22-ին դիմեց պարտիային և աշխատավորներին՝ ծանուցելով Լենինի մահը.*

*«Մեռավ այն մարդը, որը հիմնել է մեր պողպատե պարտիան, որը կառուցում էր այն տարեց-տարի, առաջնորդում էր նրան ցարիզմի հարվածների ներքո, սովորեցնում և կոփում էր նրան բանվոր դասակարգի դավաճանների դեմ մղված կատաղի պայքարում...*

*Այն բոլորը, ինչ պրոլետարիատի մեջ իսկապես մեծ է և հերոսական՝ անվեհեր միտքը, երկաթե, անընկճելի, համառ, ամեն ինչ հաղթահարող կամքը, սրբազան ատելությունը, մահու չափ ատելությունը ստրկության և ճնշման նկատմամբ, ռևոլյուցիոն կիրքը, որ լեռներ է շարժում, մասսաների ստեղծարար ուժի նկատմամբ անսահման հավատը, հսկայական կազմակերպական հանճարը,—այս բոլորն իր հիանալի մարմնացումն էր գտել Լենինի մեջ, որի անունը նշանավել է մեր սիմվոլն է դարձել արևմուտքից մինչև արևելք ամենաամուր*

մինչև հյուսիս...» (Հատ... I-ին, էջ՝ 557, ռուս. հրատ.)։

Լենինը մեռավ, բայց լենինիզմը, ... վարը գոյություն ունեն և որպես մեծագ... խիչ ուժ կապրեն դարեր ու հազարամյակներ։ ... ապրում է Սովետական Միության աշխատավորների ... ամբողջ աշխարհի ճնշված ժողովուրդների մտքերում և սրտերում։ Մեր հասարակության զարգացման ամբողջ ընթացքը վկայում է Լենինի ուսմունքի վեհության և ճշմարտացիության մասին։

Լենինյան սգո օրերին ՍՍՌՄ Սովետների երկրորդ համագումարում ընկեր Ստալինը պարտիայի անունից տվեց մեծ երդում, որը կապրի դարեր շարունակ և ընկեր Ստալինի հանճարեղ ղեկավարությամբ կենսագործվել է ու կկենսագործվի։ Սովետական Միության բանվոր դասակարգը Լենինի մահվանը պատասխանեց ավելի՛ ևս համախմբվելով լենինյան պարտիայի շուրջը։ Հազարավոր բանվորներ դիմում տվեցին բոլշևիկների պարտիայի մեջ մտնելու համար։ ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացում այդ մասին գրված է հետևյալը․

«Լենինի մահը ցույց տվեց, թե մեր պարտիան որքան մոտ է բանվորական մասսաներին և թե որքան թանկ են գնահատում բանվորները լենինյան պարտիան» (ՀամԿ(բ)Պ պատմություն. համառոտ դասընթաց, էջ՝ 367)։

Մեր պարտիան և ՍՍՌՄ-ի բոլոր աշխատավորները հանձին մեծ Ստալինի տեսնում են Լենինի գործի խոկական շարունակողին, մի մարդու, որն իրոք բազմակողմանիորեն մարմնավորում է Լենինի բոլոր պատգամները, իրագործում է դրանք այնպես, ինչպես կիրագործեր Լենինը։ Ստալինը—դա Լենինն է այսօր։

Վլադիմիր Իլյիչի մահվան առթիվ Հանրի Բարբյուսը գրել է հետևյալը. մեռավ նա, «ով իր մեջ մարմնացնում էր ողջ ռուսական ռևոլյուցիան. նա, ով այն



կրում էր իր ուղեղում, նախապատրաստեց, իրագործեց, փրկեց։ Լենինը պատմություն ստեղծողներից մեծագույնը և ամեն տեսակետից մաքրագույնն է. մի մարդ, որից ավելին ոչ ոք չի կատարել մարդկանց համար»։

Ահա թե ինչու ամեն տարի այս օրը բոլշևիկների պարտիան և սովետական ժողովուրդը, ամբողջ աշխարհի առաջավոր մարդիկ մեծարում են պատմության մեծագույն մարդու, բոլշևիկների պարտիան կազմակերպողի, սովետական պետությունը ստեղծողի, ռևոլյուցիայի հանճարի և աշխատավորների առաջնորդի— Վլադիմիր Իլյիչ Լենինի հիշատակը։

***

Վլադիմիր Իլյիչ Ուլյանովը (Լենին) ծնվել է Սիմբիրսկ (այժմ Ուլյանովսկ) քաղաքում, 1870 թվականի ապրիլի 10-ին (22-ին)։ Վաղ հասակից Վ. Ի. Լենինը զբաղվել է ռևոլյուցիոն գործունեությամբ։ 1887 թվականին, 17 տարեկան հասակում, նա ձերբակալվում է ուսանողների ռևոլյուցիոն շարժմանը մասնակցելու համար և հեռացվում է Կազանի համալսարանից։ Այդ ժամանակվանից Լենինն իր ամբողջ կյանքը նվիրում է պրոլետարիատի կողմից կապիտալիզմի տապալման, աշխատավորներին ճնշումից և շահագործումից ազատագրելու համար մղվող պայքարի գործին։ Լենինը խորապես ուսումնասիրեց և ստեղծագործաբար կիրառեց Մարքսի ուսմունքը։

Լենինի եռուն ռևոլյուցիոն աշխատանքը Ռուսաստանի քաղաքական կենտրոն Պետերբուրգում (այժմ Լենինգրադ) սկսվել է 1893 թվին։ Բանվորների մեջ ունեցած իր ելույթներում, հանճարեղ երկերում Լենինն անշեղորեն պայքարել է նոր տիպի մարտական, ռև... ցիոն պարտիայի ստեղծման համար, ... որը կարողացավ իր շուրջը համախ... ...ակ կոփել է մեր տարիատին և նրա ... աշխատավոր ... մենաամուր

«Ի՞նչ են «ժողովրդի (Հա...
նրանք մարտնչում սոցիալ...)։
Լենինը մերկացնելով նարոդնիկիզմը,
նախագուշակեց Ռուսաստանում մեծագո... ...ներ։
պայքարի պատմական ուղին.

«Հենց բանվոր դասակարգի վրա են դարձնում ի-
րենց ամբողջ ուշադրությունը և ամբողջ իրենց գոր-
ծունեությունը սոցիալ-դեմոկրատները։ Երբ նրա առա-
ջավոր ներկայացուցիչները կյուրացնեն գիտական սո-
ցիալիզմի գաղափարները, ռուս բանվորի պատմական
դերի գաղափարը, երբ այդ գաղափարները լայն կեր-
պով կտարածվեն և բանվորների մեջ կստեղծվեն ա-
մուր կազմակերպություններ, որոնք բանվորների ներ-
կայիս տարանջատ տնտեսական պատերազմը կվերա-
փոխեն գիտակից դասակարգային պայքարի,— այն
ժամանակ ռուս բանվորը, դեմոկրատական բոլոր տար-
րերի գլուխ անցած, կտապալի աբսոլյուտիզմը, և ռուս
պրոլետարիատին (բոլոր երկրների պրոլետարիատի
հետ կողք-կողքի) քաղաքական բացահայտ պայքարի
ուղիղ ճանապարհով կտանի դեպի հաղթական կոմու-
նիստական ռևոլյուցիան»։

Իրականությունը ցույց տվեց Վ. Ի. Լենինի հանճարեղ
նախագուշակումների ճշմարտացիությունը։ Լենինի և
Ստալինի կողմից կազմակերպված մեր բոլշևիկների
պարտիան հսկայական ազդեցություն ձեռք բերեց
ռևոլյուցիոն մասսաների մեջ։ Բոլշևիկների պարտիան
ռեակցիայի տարիներին կատաղի պայքար էր մղում
բանվոր դասակարգի բոլոր թշնամիների դեմ, ռևոլյու-
ցիոն շարժման մեջ ուղեկիցների դեմ, նա գլխավորեց
աճող ռևոլյուցիոն շարժումը վերելքի տարիներին, հա-
մախմբեց Ռուսաստանի պրոլետարիատին՝ դարձնելով
մի հզոր ուժ և 1917 թվականի հոկտեմբերին զինված
ապստամբության միջոցով տապալեց կալվածատերերի



ու կապիտալիստների իշխանությունը, հաստատեց
պրոլետարիատի դիկտատուրա։
Լենինը միշտ հաղթահարում էր բոլոր դժվարու-
թյունները, ձախորդությունները։ Տարիներ շարունակ
գտնվելով բանտերում, աքսորում, նա անդուլ կերպով
աշխատում էր բանվոր դասակարգի գործի համար։
Մարդկության պատմության մեջ երբեք չեն եղել այնպի-
սի գաղափարներ, որոնք կարողանային իրենց ետևից
տանել ժողովուրդների այդպիսի մեծ մասսաներ, ինչ-
պես Լենինի գաղափարները, որոնք լուսավորեցին մի-
լիոնավոր աշխատավորների ուղին, վերափոխեցին ամ-
բողջ պետություններ և նոր էջ բացին մարդ-
կության պատմության մեջ։
«Ի՞նչ անել», «Մեկ քայլ առաջ, երկու քայլ հետ»,
«Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ», «Սոցիալ-դե-
մոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական ռևո-
լյուցիայի մեջ» իր նշանավոր գրքերում և այլ աշխա-
տություններում Լենինը փայլուն կերպով հիմնավո-
րեց բոլշևիկների պարտիայի իդեական, կազմակերպա-
կան, տեսական և տակտիկական հիմունքները։ Այդ ի-
մաստուն երկերը, որպես գործողության ծրագիր, դար-
ձան մեր պարտիայի գործունեության հիմքը։ Լենինը
ստեղծեց նոր տիպի պարտիա, որը սկզբունքորեն
տարբերվում էր օպորտունիստների պարտիայից, նա
անհաշտ պայքար էր մղում պարտիայի բոլոր թշնամի-
ների՝ նարոդնիկների, էկոնոմիստների, լեգալ մարք-
սիստների, էսերների, մենշևիկների, կադետների, օտզո-
վիստների և ռևոլյուցիոն շարժման մեջ բոլոր ուղեկից-
ների դեմ։ Լենինը պաշտպանեց պրոլետարիատի պար-
տիայի կազմակերպական և գաղափարական համա-
խմբվածությունը։
Լենինի մասին, որպես մեր պարտիայի կազմա-
կերպողի մասին ընկեր Ստալինն ասել է.
«Ընկեր Լենինը 25 տարի շարունակ կոփել է մեր
պարտիան և նրանից դարբնել աշխարհում ամենաամուր

և ամենակոփված բանվորական պարտիան։ Ցարիզմի և նրա գործակալների հարվածները, բուրժուազիայի և կալվածատերերի կատաղությունը, Կոլչակի և Դենիկինի զինված հարձակումները, Անգլիայի և Ֆրանսիայի զինված միջամտությունը, բուրժուական հարյուրաբերան մամուլի սուտն ու զրպարտությունը,— այս բոլոր կարիճները քառորդ դարի ընթացքում մշտապես թափվել են մեր պարտիայի գլխին։ Բայց մեր պարտիան ժայռի նման կանգնած է եղել, ետ մղելով թշնամիների անթիվ հարվածները, և բանվոր դասակարգին տանելով առաջ՝ դեպի հաղթանակ։ Մեր պարտիան դաժան մարտերում կոփեց իր շարքերի միասնությունն ու միաձուլությունը։ Միասնությամբ ու միաձուլությամբ նա հաղթանակ ձեռք բերեց բանվոր դասակարգի թշնամիների դեմ» (Ստալին. Լենինի մասին, էջ՝ 19—20)։

***

Իր ամբողջ պայքարի ընթացքում մեր պարտիայի հիմնական խնդիրն է եղել կալվածատերերի ու կապիտալիստների իշխանության տապալումը և բանվորների ու գյուղացիների իշխանության, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը։ Պրոլետարիատի հանճարեղ առաջնորդներ Լենինը և Ստալինը հանդիսանում են մեր պետության՝ սովետական պետության ստեղծողներ, մեծ Լենինը «հայտնագործեց Սովետական իշխանությունը, որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձև, դրա համար օգտագործելով Փարիզյան կոմունայի և ռուսական ռևոլյուցիայի փորձը...» (Ստալին)։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակով մեր երկիրն իրագործեց հսկայական ոստյուն ցարիզմից և բուրժուա-կալվածատիրական կարգերից դեպի սովետական իշխանությունը։ Մարդկության



պատմության մեջ առաջին անգամ Սովետների II համագումարում՝ 1917 թվականի հոկտեմբերի 25—26-ին (նոյեմբերի 7—8-ին) ստեղծվեց Բանվորա-գյուղացիական սովետական կառավարություն՝ Ժողովրդական Կոմիսարների Սովետ։ Ժողկոմսովետի նախագահ ընտրվեց Վ. Ի. Լենինը։ Համագումարում ընդունվեցին դեկրետներ խաղաղության և հողի մասին։

Մեր պարտիայի առաջնորդներ Լենինը և Ստալինը հանդիսանում են դեպի սովետական հասարակարգը կատարված այդ պատմական շրջադարձի կազմակերպողներն ու ոգեշնչողները։ Լենինը մեր պետությունը կոչում էր Սովետական պետություն այն պատճառով, որ նրա քաղաքական հիմքը հանդիսանում են Սովետները, որ այդ պետությունն ունի իշխանության սովետական ձև։ Լենինը հանդիսանալով առաջին Ժողկոմսովետի նախագահ, ամբողջ եռանդով ձեռնամուխ եղավ Սովետական պետության շինարարությանն ու ամրապնդմանը։ Ամենադժվարին օրերին, երբ հարկավոր էր կազմակերպել պետության կառավարումը, բնակչության մատակարարումը, ջախջախել ներքին և արտաքին թշնամիների դիմադրությունը, ստեղծել միանգամայն նոր պետություն՝ նոր ձեռնարկություններով, Լենինը օր ու գիշեր եռուն, անսպառ եռանդով աշխատում, հաղթահարում էր բոլոր դժվարությունները, հանդես էր գալիս միտինգներում, ժողովներում, ընդունում էր զանազան և բազմաթիվ դելեգացիաներ, պարզաբանում էր սովետական իշխանության նպատակներն ու խնդիրները։ Հենց Լենինն ու Ստալինն էին, որ կազմակերպում և ուղղություն էին տալիս Սովետական երիտասարդ ռեսպուբլիկայի ամբողջ աշխատանքին, ղեկավարում էին ներքին և արտաքին քաղաքականությունը։

1918 թվականի հունվարի 23-ին Սովետների Համառուսաստանյան III համագումարը հաստատեց Լենինի առաջարկած՝ «Աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիան», որը հանդիսա-

ցավ սովետական առաջին Կոնստիտուցիայի նախագիծը։

Քաղաքացիական պատերազմի տարիներին Լենինն ու Ստալինը անմիջականորեն ղեկավարում էին ռազմաճակատները, մոբիլիզացնում էին պարտիային ու ժողովրդին՝ ինտերվենտների դեմ պայքարելու համար։ Լենինը միշտ հավատում էր Ռուսաստանի անսպառ ուժին և հզորությանը։ Այդ ժամանակաշրջանում նա գրում էր. «Ռուսաստանն աչքի է ընկել նրանով, որ ամենադժվար ժամանակ նա միշտ իր տրամադրության տակ ունեցել է մասսաներ, որոնց կարելի էր առաջ շարժել իբրև պահեստի բանակ, որի մեջ նոր ուժեր էին գտնվում, երբ հին ուժերն սկսում էին սպառվել»։

Այդ մարգարեական խոսքերը լրովին արդարացան գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղված Հայրենական մեծ պատերազմի օրերին, երբ գերմանացիները ուխտադրուժ ու հանկարծակի հարձակման հետևանքով կարողացան մոտենալ Մոսկվային, Լենինգրադին, Ստալինգրադին, բայց շնորհիվ Լենինի գործը շարունակող ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարության. մեզ մոտ գտնվեցին ուժեր թշնամուն ո՛չ միայն մեր Հայրենիքից դուրս քշելու, այլ և նրան իր սեփական որջում ջախջախելու համար։

Վլադիմիր Իլյիչ Լենինը խորապես հավատում էր ժողովրդի ուժին և փոխադարձաբար սովետական ժողովուրդը սիրում էր իր առաջնորդին։ Սոցիալիզմի շինարարությանը մասնակցում են մեր ժողովրդի լայն մասսաները։ Լենինը սովորեցնում էր, որ հասարակության կյանքի նախկին ձևերի համեմատությամբ սովետական հասարակարգի ամենաուժեղ կողմը հանդիսանում է ամբողջ ժողովրդի մասնակցությունը նոր հասարակարգի կառուցմանը։ Ոչ մի տեղ, ոչ մի պետության մեջ չկա այնպիսի լայն դեմոկրատիա, ինչպես մեզանում՝ Լենինի և Ստալինի կողմից ստեղծված Սովետական պե-



տությունում։ Սովետական իշխանության հենց առաջին օրերին Լենինը կոչ էր անում.

«Ընկեր աշխատավորնե՛ր, հիշեցե՛ք, որ դուք ինքներդ եք այժմ կառավարում պետությունը։ Ձեզ ոչ ոք չի օգնի, եթե դուք ինքներդ չմիավորվեք և պետության բոլոր գործերը չվերցնեք ձեր ձեռքը։ Ձեր Սովետները այսուհետև պետական իշխանության օրգաններ են, լիազոր, վճռական օրգաններ»։

Իսկական ժողովրդական և հետևողական դեմոկրատիան իրագործվեց միայն մեր երկրում, Լենին-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ։ Մեզ մոտ ոչ միայն արտադրության գործիքներն ու միջոցներն են պատկանում աշխատավորներին, այլև պետության կառավարմանը, երկրի քաղաքական կյանքին մասնակցում են բնակչության լայն խավերը։ Սովետական դեմոկրատիայի մասին Լենինի գաղափարները մարմնավորվեցին 1924 թվականին ընդունված ՍՍՌՄ առաջին Կոնստիտուցիայի մեջ։ Լենինի գծած ուղիով սովետական ժողովուրդը կառուցում է իր կյանքը։ Մեր երկրում իսկական սովետական դեմոկրատիայի իրագործումը հնարավոր է այն պատճառով, որ մեր սոցիալիստական պետության մեջ աշխատավորների ձեռքում են գտնվում հողը, ֆաբրիկաները, գործարանները, բանկերը, տրանսպորտը։ Մեզ մոտ ինչպես քաղաքում, այնպես և գյուղում վերացված են մարդու կողմից մարդու ամեն տեսակ շահագործման սոցիալական հիմքերը և ստեղծված են պայմաններ երկրի կառավարման գործում բոլոր քաղաքացիների իսկական հավասարության համար։ Այդ՝ իսկապես սոցիալիստական դեմոկրատիան մեր ժողովուրդը նվաճել է իր բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ։

1936 թվականին ընդունված Ստալինյան Կոնստիտուցիան հանդիսանում է Լենին-Ստալինի պարտիայի

ղեկավարությամբ ձեռք բերված բոլոր նվաճումների օրենսդրական ամրապնդումը։ Ստալինյան Կոնստիտուցիայի մեջ իր ծաղկմանն է հասել սովետական սոցիալիստական դեմոկրատիան, աշխարհում ամենակատարյալ դեմոկրատիան։ Դեռ Սովետների Համառուսաստանյան II համագումարում Լենինն ասել է.

«Մեր պատկերացումով պետությունն ուժեղ է մասսաների գիտակցականությամբ։ Նա ուժեղ է այն ժամանակ, երբ մասսաները ամեն ինչ գիտեն, ամեն ինչի մասին կարող են դատել և ամեն ինչ կատարում են գիտակցաբար»։ (Լենին, Երկեր, հատ. 22-րդ, էջ 18—19, ռուս. հրատ.)

Մեր սովետական մարդիկ ասում են՝ այս բոլոր տարիներին մենք հաստատուն կերպով ընթացել ենք մեր սովետական հասարակարգի հայր Լենինի դրոշի ներքո։ Դրանք եղել են լենինյան պարզ ուղու վրա անդառնալիորեն կանգնած ժողովրդի փառապանծ աշխատանքի և անձնվեր պայքարի տարիներ։

***

Իր երկրի, իր ժողովրդի նկատմամբ տածվող սիրո, մյուս ժողովուրդների նկատմամբ հարգանքի, սոցիալիստական Հայրենիքի նկատմամբ սիրո լենինյան տրադիցիաները շարունակում և զարգացնում է ընկեր Ստալինը։ Ընկեր Ստալինի ողջ մեծ գործունեությունը տոգորված է մեր երկրի նկատմամբ, մեր ժողովրդի, երիտասարդության, երեխաների, սովետական բոլոր մարդկանց նկատմամբ սիրո անսպառ ուժով։ Անչափ մեծ է ընկեր Ստալինի ծառայությունը այն բանում, որ նա զարգացրեց և լրացրեց Լենինի ուսմունքը սոցիալիստական հասարակարգի կառուցման ժամանակաշրջանում։

Ընկեր Ստալինը Լենինի դագաղի առաջ սրբազան երդում տվեց բարձր պահել լենինիզմի մեծ դրոշը,



մինչև վերջը հավատարիմ լինել լենինյան պատգամներին և անդուլ կերպով շարունակել Լենինի սկսած գործը.

«Հեռանալով մեզանից, ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց՝ բարձր պահել և մաքուր պահպանել պարտիայի անդամի մեծ կոչումը։ Երդվում ենք քեզ, ընկեր Լենին, որ մենք պատվով կկատարենք քո այդ պատվիրանը...

Հեռանալով մեզանից, ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց՝ աչքի լույսի պես պահպանել մեր պարտիայի միասնությունը։ Երդվում ենք քեզ, ընկեր Լենին, որ մենք պատվով կկատարենք քո այդ պատվիրանը ևս...

Հեռանալով մեզանից, ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց՝ պահպանել և ամրապնդել պրոլետարիատի դիկտատուրան։ Երդվում ենք քեզ, ընկեր Լենին, որ մենք չենք խնայի մեր ուժերը, որպեսզի պատվով կատարենք քո այդ պատվիրանը ևս...

Հեռանալով մեզանից, ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց՝ բոլոր ուժերով ամրապնդել բանվորների և գյուղացիների դաշինքը։ Երդվում ենք քեզ, ընկեր Լենին, որ մենք պատվով կկատարենք քո այդ պատվիրանը ևս...

Հեռանալով մեզանից, ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց՝ ամրացնել և ընդլայնել Ռեսպուբլիկաների Միությունը։ Երդվում ենք քեզ, ընկեր Լենին, որ մենք պատվով կկատարենք քո այդ պատվիրանը ևս...

Լենինը բազմիցս նշել է մեզ, որ Կարմիր Բանակի ամրապնդումը և նրա դրության բարելավումը հանդիսանում է մեր պարտիայի կարևորագույն խնդիրներից մեկը... Ուրեմն երդվենք ընկերներ, որ մենք չենք խնայի մեր ուժերը մեր Կարմիր Բանակը, մեր Կարմիր Նավատորմը ամրապնդելու համար»։

Ընկեր Ստալինը սրբությամբ կատարում է իր տըված երդումը։ Լենինի մահից հետո մեր պետության և պարտիայի ղեկավարման ամբողջ ծանրությունը ընկավ ընկեր Ստալինի վրա։ Մեր պարտիան ընկեր Ստալինի

ղեկավարությամբ հսկայական հաջողություններ է ձեռք բերել պրոլետարիատի դիկտատուրայի ամրապնդման, բանվորների և գյուղացիների դաշինքի, մեր երկրի ժողովուրդների բարեկամության, Սովետական Բանակի ու Նավատորմի ամրապնդման և մեր երկրում սոցիալիզմի կառուցման գործում։ Լենինի նշած ուղիով ընկեր Ստալինը մեր երկիրը տարավ դեպի ինդուստրացում և ՍՍՌՄ-ը ներկայումս հանդիսանում է ծանր ինդուստրիայի առաջավոր երկիր, որն ունի հսկայական մետալուրգիական, մեքենաշինական գործարաններ, կոմբինատներ ու էլեկտրակայաններ։

Միայն ընկեր Ստալինը կարողացավ ամբողջ հանճարեղությամբ մշակել գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման և հարյուր միլիոնանոց գյուղացիությունը կոլխոզային կարգերի մեջ ներգրավելու թեորիան։

«Ամենակարճ ժամկետում ձեռք բերել այնպիսի համաշխարհային-պատմական հաղթանակ, որի մասին չեն կարողացել նույնիսկ երազել մարդկության լավագույն գլուխները, հասնել այն բանին, որ դարեր շարունակ ցրված ապրող հարյուր միլիոնանոց գյուղացիությունը սկսի ապրել և աշխատել սոցիալիստական ձևով,— այս բանը հնարավոր դարձավ միայն շնորհիվ Լենինի հավատարիմ աշակերտ հանճարեղ Ստալինի» (Միկոյան, ճառ Երևանի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, 1937 թ. դեկտեմբերի 9-ին)։

Գյուղատնտեսության կոլեկտիվացումը, հետամնաց, մասնատված մանր գյուղացիական տնտեսությունների վերածումը մեքենայացված խոշոր սովխոզների և կոլեկտիվ տնտեսությունների, որոնք ունեն առաջավոր տեխնիկա,— այս բանն իր նշանակությամբ հանդիսանում է մի մեծ ռևոլյուցիա Սովետական Միության գյուղացիության կյանքում։ Գյուղատնտեսական



արտելների մեջ միավորվելը լայն ուղի հարթեց մեր կոլխոզային գյուղացիության երջանիկ և բարեկեցիկ կյանքի համար, հնարավոր դարձրեց գյուղատնտեսական մթերքների անխափան մատակարարումը քաղաքներին և Կարմիր Բանակին։

***

Ընկեր Ստալինը փայլուն կերպով իրագործեց լենինյան ուսմունքը ազգային հարցի վերաբերյալ, ամրապնդելով ՍՍՌՄ-ում բնակվող ժողովուրդների եղբայրական բարեկամությունը։ Այդ բարեկամությունը կոփել է բոլշևիկյան պարտիան սոցիալիզմի խաղաղ շինարարության տարիներին, այն ամրապնդվել է արյունով Հայրենական մեծ պատերազմի տարիներին, երբ բոլոր ժողովուրդները, որպես միասնական ընտանիքի անդամներ, իրենց կրծքով պաշտպանեցին հարազատ Հայրենիքը։ Սովետական Միության ժողովուրդները համախմբվեցին ռուս մեծ ժողովրդի՝ որպես իրենց ավագ եղբոր շուրջը և միահամուռ ջանքերով ջախջախեցին թշնամուն։ Սովետական իշխանության տարիներին միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաներում ծաղկեց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։

Ստալինյան հնգամյակներն արմատապես վերափոխեցին մեր երկիրը։ Մեկ, առանձին վերցրած երկրում սոցիալիզմ կառուցելու հնարավորության հանճարեղ ուսմունքը, որ հայտնագործեց մեծ ուսուցիչ Լենինը և որը հետագայում զարգացրեց ընկեր Ստալինը, լիովին իրագործված է մեր երկրում։ Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ մեր երկրի ժողովուրդները կառուցեցին սոցիալիզմը։ Այժմ սոցիալիզմն է որոշում մեր երկրի ամբողջ կյանքը։

Մեծ Ստալինի ղեկավարությամբ, ընթանալով լենինյան ուղիով, սովետական ժողովուրդը նվաճեց Ստալինյան Կոնստիտուցիան, հաղթանակած սոցիալիզմի Կոնստիտուցիան։

Ընկեր Ստալինի անվան հետ է կապված մեր փառապանծ Սովետական Բանակի ծնունդը, աճումը, ամրապնդումը, կոփումը։ Հայրենական մեծ պատերազմի տարիներին ընկեր Ստալինը անմիջականորեն ղեկավարում էր Սովետական Բանակի մարտական գործողությունները։ Շնորհիվ նրա հանճարեղ զորավարական ընդունակությունների, սովետական ժողովուրդն ու Սովետական Բանակը կարողացան ջախջախել թշնամուն և պաշտպանել սոցիալիզմի նվաճումները, իրենց կյանքը, ազատությունը, սոցիալիստական հասարակակարգը, իրենց սովետական դեմոկրատիան։

Մեր երկրին վիճակված ծանր փորձությունների տարիներին Լենին-Ստալինի պարտիան ավելի ևս հարազատ դարձավ մասսաների համար և ձեռք բերեց այնպիսի հեղինակություն, որի նմանը չունի աշխարհում ո՛չ մի պարտիա։ Ընկեր Ստալինը մեր պարտիան դարձրեց ամենաուժեղ և միաձույլ պարտիա։

Ընկեր Ստալինի գլխավորությամբ սովետական ժողովուրդը մեծ եռանդով կկատարի ու կգերակատարի նոր հնգամյա պլանը, է՛լ ավելի բարձրացնելով մեր Հայրենիքի հզորությունը, ժողովրդի նյութական-կուլտուրական մակարդակը։

Ընկեր Ստալինի մասին, որպես մեծ Լենինի գործի հանճարեղ շարունակողի մասին, վառ կերպով արտահայտվել է Ս. Մ. Կիրովը, 1934 թվականի հունվարին.

«Դժվար է պատկերացնել այն հսկայի կերպարը, որպիսին հանդիսանում է Ստալինը։ Վերջին տարիների ընթացքում, այն ժամանակվանից ի վեր, երբ մենք աշխատում ենք առանց Լենինի, մենք չգիտենք մեր աշխատանքում ոչ մի շրջադարձ, քիչ թե շատ խոշոր ոչ մի ձեռնարկում, լոզունգ, ուղղություն մեր քաղաքականության մեջ, որի հեղինակը լիներ ոչ թե ընկեր Ստալինը, այլ մեկ ուրիշը։ Ամբողջ հիմնական աշխատանքը— այդ պետք է իմանա պարտիան,— կատարվում է ընկեր Ստալինի ցուցումներով, նրա նախաձեռնությամբ և ղեկավարությամբ։ Միջազգային քաղաքականության ա-



մենամեծ հարցերը որոշվում են նրա ցուցումով, և ոչ միայն այդ մեծ հարցերը, այլև թվում էր թե երրորդական և նույնիսկ տասներորդական հարցերը հետաքրքրում են նրան, եթե դրանք վերաբերում են մեր երկրի բանվորներին, գյուղացիներին և բոլոր աշխատավորներին... Այդ մարդու հզոր կամքը, վիթխարի կազմակերպական տաղանդը պարտիայի համար ապահովում է սոցիալիզմի հաղթական շինարարության հետ կապված պատմական մեծ շրջադարձերի ժամանակին կատարումը»։

Սովետական մեր մեծ երկրի արտաքին և ներքին կյանքում ձեռք բերված բոլոր նվաճումների համար մենք պարտական ենք ընկեր Ստալինին։ Ահա թե ինչու մենք ասում ենք՝ Ստալինը— Լենինն է այսօր։ Մեծ Լենինի կերպարը մարմնացած է ընկեր Ստալինի մեջ։ Լենինի և Ստալինի կենսագրությունները աշխատավորների համար ծառայում են իբրև ոգեշնչման աղբյուր սովետական Հայրենիքում կատարվող աշխատանքային սխրագործությունների ասպարեզում։ Նրանց գործունեությունը հանդիսանում է ժողովրդին անձնուրաց կերպով ծառայելու կենդանի և մեծ օրինակ։

Ընկեր Ստալինը Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1937 թվի դեկտեմբերի 11-ին ասաց, թե ինչպիսին պետք է լինի դեպուտատը.

«Ընտրողները, ժողովուրդը պետք է իրենց դեպուտատներից պահանջեն, որպեսզի նրանք մնան իրենց խնդիրների բարձրության վրա, որպեսզի նրանք իրենց աշխատանքում չիջնեն մինչև քաղաքական օրիվատելների մակարդակը, որպեսզի նրանք մնան լենինյան տիպի քաղաքական գործիչների պոստում, որպեսզի նրանք լինեն նույնպիսի պարզ և որոշակի գործիչներ, ինչպես Լենինը. որպեսզի նրանք մարտում լինեն նույնպես ան-

վեհեր և դեպի ժողովրդի թշնամիները անողոք, ինչպիսին էր Լենինը, որպեսզի նրանք ազատ լինեն ամեն տեսակ խուճապից, խուճապի նման որևէ բանից, երբ գործը սկսում է բարդանալ և հորիզոնի վրա ուրվագծվում է որևէ վտանգ, որպեսզի նրանք նույնպես ազատ լինեն խուճապի նման որևէ բանից, ինչպես ազատ էր Լենինը, որպեսզի նրանք բարդ հարցերի լուծման ժամանակ, որտեղ պետք է բազմակողմանի կողմնորոշում և բոլոր պլյուսների ու մինուսների բազմակողմանի հաշվառում, լինեն նույնպես իմաստուն և չափապարող, ինչպիսին էր Լենինը, որպեսզի նրանք լինեն նույնպես ճշմարտացի և ազնիվ, ինչպիսին էր Լենինը, որպեսզի նրանք նույնպես սիրեն իրենց ժողովրդին, ինչպես սիրում էր նրան Լենինը»։

***

Մեր ռեսպուբլիկայի պարտիական, կոմերիտական, սովետական, պրոֆմիութենական և հասարակական բոլոր կազմակերպությունները արդեն ծավալել են ընտրական կամպանիայի եռուն ժամանակաշրջանը։ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների հաջող նախապատրաստման և կազմակերպման գործում մեծ և պատվավոր դեր ունեն կատարելու մեր ագիտատորները։ Ներկայումս ագիտատորների խնդիրն այն է, որ բացատրեն աշխատավորների լայն մասսաներին Լենինի մեծագույն ծառայությունները մարդկության պատմության ասպարեզում, մեր բազմազգ սովետական պետության ստեղծման, բոլշևիկների պարտիայի կազմակերպման ասպարեզում։ Հասկանալի և մատչելի լեզվով նրանք պետք է պատմեն ամբողջ սովետական ժողովրդի առաջին թեկնածու մեծ Ստալինի մասին, որը անմահ Լենինի գործի հավատարիմ ու հետևողական շարունակողն է։



## ԺՈՂՈՎՐԴԻ ԼԱՎԱԳՈՒՅՆ ԶԱՎԱԿՆԵՐԸ ԴԵՊՈՒՏԱՏՈՒԹՅԱՆ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐ

Բերկրալի, խանդավառությամբ լեցուն օրեր է ապրում մեր ռեսպուբլիկայի աշխատավորությունը։

Կոմունիստների և անպարտիականների բլոկի առաջադրած Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուները տվել են իրենց համաձայնությունները քվեարկվելու համապատասխան ընտրական օկրուգներում։

Դեպուտատության թեկնածուների թվումն է Սովետական Միության ժողովուրդների առաջնորդը, մեր հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչը, հայ ժողովրդի փրկարար մեծ ՍՏԱԼԻՆԸ։ Դեպուտատության թեկնածուների կազմում են մեծ Ստալինի մերձավորագույն զինակիցներ՝ Սովետական պետության և բոլշևիկյան պարտիայի ականավոր գործիչ ընկեր Մոլոտովը, հայ ժողովրդի արժանավոր զավակ, ականավոր պետական գործիչ ընկ. Միկոյանը։ Դեպուտատության թեկնածուների կազմում է Հայաստանի բոլշևիկների մարտական ղեկավար ընկ. Գր. Հարությունյանը։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների ընտրական օկրուգներում դեպուտատության թեկնածուներ գրանցված են Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի վիցե-պրեզիդենտ ընկ. Վ. Համբարձումյանը, Երևանի առաջին կոշիկի գործարանի ցեխի վարպետ, անպարտիական Նվարդ Մելքոնյանը, Հայբամբակտրեստի կառավարիչ Նադոե Խդո Մախմուդովը և ուրիշներ։ Դեպուտատության թեկնածուներ են գը-

բանջված բանվորներ, կոլխոզնիկներ, ինտելիգենցիայի ներկայացուցիչներ, մեր ռեսպուբլիկայի անվանի մարդիկ։

Մեր պարտիական կազմակերպությունների, մեր ագիտատորների վրա դրվում է բարձր և պատվավոր խնդիր՝ ագիտացիա մղել կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին։ Ագիտատորները դրսևորելով իրենց ամբողջ շնորհքն ու կարողությունը, միասին պետք է պատմեն ընտրողներին դեպուտատության թեկնածուի արժանիքների մասին, մեր չքնաղ Հայրենիքի արժանավոր որդիների և դուստրերի աշխատանքային սխրագործությունների մասին։

Մեծ պատիվ է բաժին ընկել մեր դեպուտատության թեկնածուներին՝ լինել ժողովրդի ընտրյալներ։ Մեծ պատիվ է բաժին ընկել նաև մեր ընտրողներին՝ քվեարկել ամենասիրելի մարդու, իսկական դեմոկրատական կարգեր ստեղծողի՝ մեծ ՍՏԱԼԻՆԻ օգտին, նրա սաների օգտին։

Ժողովրդական լայն մասսաները է՛լ ավելի ամուր համախմբված բոլշևիկյան պարտիայի և նրա մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը 1947 թվականի փետրվարի 9-ին կմոտենան քվեատուփերին և որպես մի մարդ ձայն կտան կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին։

Ագիտատորնե՛ր, որպես բոլշևիկյան պարտիայի խոսքը տարածողներ, բոլշևիկյան ագիտացիա մղեցեք Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության յուրաքանչյուր թեկնածուի օգտին։



# ԴԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԴԵՊՈՒՏԱՏԸ

Սովետական ընտրական սիստեմը ամբողջ աշխարհի ընտրական սիստեմներից ամենադեմոկրատականն է։ Մեր սովետական դեմոկրատիայի հետևողականությունն ու կատարելությունն իր արտահայտությունն է գտնում սովետական պետական իշխանության օրգաններում դեպուտատության թեկնածուների առաջադրման կարգի մեջ և իրենց ընտրողների առաջ դեպուտատների ունեցած պարտականությունների մեջ։

Ըստ սովետական ընտրական սիստեմի դեպուտատության թեկնածուների առաջադրման իրավունքը պատկանում է հասարակական կազմակերպություններին ու աշխատավորների ընկերություններին, հանձինս կոմունիստական պարտիական կազմակերպությունների, պրոֆեսիոնալ միությունների, կոոպերատիվ կազմակերպությունների, երիտասարդական կազմակերպությունների և կուլտուրական ընկերությունների։ Այդ կազմակերպությունների ինչպես ռեսպուբլիկական, այնպես էլ շրջանային օրգանները, հավասարապես նաև բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովները ձեռնարկություններում ու հիմնարկություններում, զինծառայողների ժողովները զորամասերում, գյուղացիների ընդհանուր ժողովները կոլխոզներում ու գյուղերում, սովխոզների բանվորների ու ծառայողների ժողովները սովխոզներում, ազատ, անարգել կերպով առաջադրում են Գերագույն Սովետի դեպուտատության իրենց թեկնածուներին։

Ըստ բուրժուական երկրների ընտրական սիստեմների դեպուտատության թեկնածուներ առաջադրող օր-

*դանների թիվը խիստ սահմանափակ է, փաստորեն այդ իրավունքը իրացնում են զանազան քաղաքական պարտիաները, նրանցից ամենաուժեղները։ ԱՄՆ-ում սահմանված է, որ դեպուտատության թեկնածուներ առաջադրելու իրավունք ունեն միայն պարտիաները։ Անգլիայում 1935 թվի պառլամենտական ընտրությունների ժամանակ ընտրված 615 դեպուտատները զանազան պարտիաների անդամներ էին, պառլամենտում չկար ոչ մի անպարտիական։ Անգլիայում պառլամենտի դեպուտատության թեկնածու առաջադրվելու համար անհրաժեշտ է նախապես վճարել 150 ֆունտ ստերլինգ, որպես կանխավճար և 100 ֆունտ ստերլինգից ոչ պակաս ընտրական ծախսեր։*

*Սովետական ընտրական սիստեմը ապահովում է ՍՍՌՄ-ի բոլոր քաղաքացիների համար իշխանության բարձրագույն օրգաններում դեպուտատ ընտրվելու իրավունքը, եթե նա ընտրության օրը 23 տարեկան է դարձել՝ ՍՍՌՄ-ի Գերագույն Սովետում ընտրվելու համար և 21 տարեկան է դարձել՝ ռեսպուբլիկական Գերագույն Սովետներում ընտրվելու համար։ Մենք չունենք ակտիվ և պասիվ ընտրական սիստեմ, ակտիվ և պասիվ քաղաքացիներ։ Ընտրվողների համար 23—21 տարեկան լինելու պահանջը պայմանավորվում է նրանով, որ իշխանության բարձրագույն օրգանի դեպուտատը լինի քաղաքականապես հասունացած, կոփված։ Հասարակական մի կազմակերպության կողմից առաջադրված դեպուտատության թեկնածուն պաշտպանվում է մյուս կազմակերպությունների կողմից։ Կոմունիստները միշտ համերաշխ են գալիս անպարտիականների հետ, բլոկ կազմած՝ թեկնածու առաջադրելու և այդ թեկնածությունը պաշտպանելու ու անցկացնելու համար։ Այդ պայմանավորված է մեր հասարակարգի սոցիալիստական սիստեմով՝ մեր ժողո-*



*վուրդը ունի մի միասնական շահ, մի նպատակ։*

*Ընտրությունների ժամանակ սովետական ժողովուրդը միահամուռ կերպով դեպուտատության թեկնածու է առաջադրում մեր Հայրենիքի ամենաարժանավոր զավակներին։ Սովետական քաղաքացու սոցիալական ծագումը և անցյալ գործունեությունը արգելք չեն հանդիսանում նրա ընտրվելու իրավունքին. «...յուրաքանչյուր քաղաքացու անձնական ընդունակությունները ու անձնական աշխատանքն է որոշում նրա դրությունը հասարակության մեջ» (Ստալին)։ Այդ են ապացուցում 1946 թվի փետրվարի 10-ի ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրության արդյունքները։ ՍՍՌՄ Գերագույն Սովետում ընտրված 1339 դեպուտատներից 102-ը Սովետական Միության Հերոսներ են, 52-ը Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ, 35-ը Ստալինյան մրցանակի լաուրեատներ, 983-ը պարգևատրված են ՍՍՌՄ-ի զանազան շքանշաններով և մեդալներով։ Դեպուտատներից 511-ը բանվորներ են, 349-ը գյուղացիներ, 479-ը ծառայողներ ու սովետական ինտելիգենցիայի ներկայացուցիչներ։*

*Բուրժուական երկրներում ընտրական կամպանիայի ժամանակ դեպուտատության թեկնածուները սիրախաղում են ընտրողների հետ, քծնում են, հավատարմության երդումներ տալիս, խոստումներ անում։ Բայց ընտրվելուց հետո իրենց անկախ են զգում, հաշվետու չեն իրենց ընտրողների առաջ, նրանց չեն ճանաչում մինչև հաջորդ ընտրությունը։ Այդ է պատճառը, որ երբ Անգլիայի քաղաքներից մեկի բնակիչներին հարցում էր արվել, թե ո՞վ է նրանց դեպուտատը պառլամենտում, նրանց 22 տոկոսը չեն իմացել թե ով է իրենց դեպուտատը, իսկ բնակիչների մնացած մասը ընդհանրապես չի իմացել՝ նա պառլամենտում դեպուտատ ունի, թե ոչ։*

Սովետական պետության սիստեմում Գերագույն Սովետի դեպուտատը պետք է իմանա, որ ինքը ժողովրդի ծառան է, նրա պատվիրակը Գերագույն Սովետում և նա պետք է ընթանա այն գծով, որով ժողովուրդը նրան նակազ է տվել։

Գերագույն Սովետի դեպուտատը պետք է հետևողականորեն դրսևորի և պաշտպանի իր ընտրողների կամքը, կատարի իր պարտքը բանվորների, գյուղացիների, սովետական ինտելիգենցիայի հանդեպ, նա պետք է սիրի իր ժողովրդին, ազնվորեն ծառայի նրան, լինի անողոք և անվախ դեպի ժողովրդի թշնամիները, ազատ լինի ամեն տեսակի խուճապից, լինի քաղաքական տիպի այնպիսի գործիչ, ինչպիսին էր մեծ Լենինը, ինչպիսին է մեծ Ստալինը։

Գերագույն Սովետի դեպուտատը պետք է լինի ժողովրդին նվիրված, նա պետք է ամեն բանում նմանվի մեծ Լենինին, Ստալինին, նմանվի Կենտկոմի և կառավարության անդամներին, որոնց մասին ընկեր Ստալինը ասել է. «Ինչ վերաբերում է մեզ՝ Կենտկոմի անդամներին, կառավարության անդամներին, ապա մենք ուրիշ կյանք չունենք, քան մեր մեծ գործին նվիրված կյանքը, քան ժողովրդի ընդհանուր բարեկեցության, բոլոր աշխատավորների, միլիոնավոր մասսաների երջանկության համար մղվող պայքարին նվիրված կյանքը»։

Իր պարտականությունները կատարելու համար Գերագույն Սովետի դեպուտատը օժտված է լայն իրավունքներով, նա մասնակցում է օրենքների նախագծերի մշակման հանձնաժողովների աշխատանքներին, օրենքների նախագծերի քննարկմանն ու ըն-



դունմանը։ Նրան տրամադրվում են նյութական և այլ կարգի հնարավորություններ՝ իր պարտականությունները կատարելու համար։

Համաձայն Ստալինյան Կոնստիտուցիայի 142-րդ հոդվածի՝ «յուրաքանչյուր դեպուտատ պարտավոր է ընտրողների առաջ հաշիվ տալ իր աշխատանքի և աշխատավորների դեպուտատների Սովետի աշխատանքի մասին և կարող է ամեն ժամանակ ետ կանչվել ընտրողների մեծամասնության որոշմամբ, օրենքով սահմանված կարգով»։ Սա ամենակարող զենք է ընտրողների ձեռքում՝ իրենց ընտրյալին հսկողության տակ պահելու համար, նրան ժամանակին շուտ ետ կանչելու, երբ նա կշեղվի ճանապարհից, չի ծառայի ժողովրդին։ Դրա համար էլ ընտրողների պարտականություններն ընտրություններով չեն վերջանում։ Դրանք շարունակվում են տվյալ գումարման Գերագույն Սովետի գոյության ամբողջ ժամանակաշրջանում։ Ընտրողների պարտականությունը և իրավունքը կայանում է նրանում, որպեսզի նրանք իրենց դեպուտատներին ամբողջ ժամանակ պահեն վերահսկողության տակ և որպեսզի նրանք ներշնչեն նրանց՝ ոչ մի դեպքում չիջնել քաղաքական օբիվատելների մակարդակին, որպեսզի նրանք —ընտրողներն իրենց դեպուտատներին ներշնչեն լինել այնպիսին, ինչպիսին էր մեծ Լենինը, ինչպիսին է Ստալինը։ Դեպուտատը պետական շահերը բոլոր շահերից վեր է դասում, նա չունի ավելի վեհ խնդիր, քան ժողովրդին ծառայելը, քան իր Հայրենիքի հզորության ամրացումը, ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հնգամյա պլանի կատարման ու գերակատարման համար պայքարելը, ժողովրդական լայն

մասսաների կենսամակարդակի ու կուլտուրայի հետագա բարձրացման համար պայքարելը։

Դեպուտատության թեկնածուների մեջ կան մեր ռեսպուբլիկայի պարտիական, կառավարական օրգանների ղեկավարներ, բանվորներ, կոլխոզնիկներ, ինտելիգենցիայի ներկայացուցիչներ, որոնց օգտին քվեարկելով ընտրողը իր ընտրյալներից պահանջում է սրբությամբ ծառայել իր Հայրենիքին, իր ժողովրդին։

Ա. ՆԵՐՍԻՍՅԱՆ
(Իրավաբանական գիտությունների թեկնածու)

---

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՐԵՎՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԻՑ

Ավելի քան 50 հազար հայեր են վերադարձել Սովետական Հայաստան։ Գալով Հայրենիք և ստանալով սովետական քաղաքացու բարձր իրավունքները, նրանք ուրախությամբ ձեռնամուխ եղան աշխատանքի՝ ֆաբրիկաներում և գործարաններում, կոլխոզներում և սովխոզներում։ Վերադառնալով Սովետական Հայաստան, նրանք բուռն ցանկությամբ սկսեցին մասնակցել ռեսպուբլիկայի տնտեսական և կուլտուրական շինարարությանը, Ստալինյան նոր հնգամյակի վիթխարի պլանների կատարմանը։ Սովետական նոր քաղաքացիները հսկայական հետաքրքրություն են ցույց տալիս մեր երկրի հասարակական և քաղաքական կյանքի հանդեպ։ Երկար ժամանակ գտնվելով վտարանդիության մեջ, նրանք զրկված էին իրենց Հայրենիքի մասին ճիշտ տեղեկություններ ստանալուց։ Պարտիական կազմակերպությունները պետք է լրջորեն ձեռնամուխ լինեն քաղաքական աշխատանքների կազմակերպմանը արտասահմանից վերադարձած հայերի շրջանում։

Չի կարելի ճիշտ համարել մինչև վերջին ժամանակներս գոյություն ունեցող այն պրակտիկան, երբ պարտիական կազմակերպությունները վերադարձող հայերի շրջանում տարվող աշխատանքը սահմանափակում էին միայն առանձին զեկուցումներ և դասախոսություններ կարդալով և չէին կազմակերպում տևական մասսայական-քաղաքական աշխատանք։ Այդպես է եղել Զանգիբասարի, Էջմիածնի և այլ շրջանների առանձին կոլխոզներում։

Սովետական նոր քաղաքացիների շրջանում տարվող քաղաքական աշխատանքում խոշոր նշանակություն ունի ագիտատորների և պրոպագանդիստների ճիշտ ընտրումը և դաստիարակումը։ Պարտիական կազմակերպությունները որպես ագիտատորներ և պրոպագանդիստներ պետք է առանձնացնեն առավել փորձված ընկերների, որոնք ունեն ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի հարուստ փորձ։ Կարևոր նշանակություն ունի, երբ սովետական նոր քաղաքացիների հետ տարվող քաղաքական աշխատանքում ընդգրկվում են պարտիական և սովետական կազմակերպությունների ղեկավար աշխատողները։ Քաղաքացիների համար պետք է սիստեմատիկորեն անցկացնել հանրամատչելի զեկուցումներ, զրույցներ ոչ միայն ձեռնարկություններում և կոլխոզներում, որտեղ աշխատում են նրանք, այլև նրանց տանը։ Այդ տեսակետից ուշադրության արժանի է մասսայական-քաղաքական աշխատանքների կազմակերպման պրակտիկան Երևան քաղաքի Սպանդարյան ռայոնում։ Այստեղ ագիտատորները ամրացված են տներին, սիստեմատիկորեն այցելում են նրանց, կազմակերպում են հանրամատչելի զրույցներ, բացատրություններ և տեղեկանքներ են տալիս նրանց զանազան պրակտիկ հարցերի շուրջը։

Հատուկ ուշադրություն պետք է դարձնել մասսայական-քաղաքական և բացատրական աշխատանքների կազմակերպմանը վերադարձած կանանց շրջանում. նրանց համար սիստեմատիկորեն պետք է անցկացնել զրույցներ և զեկուցումներ հետևյալ թեմաներով՝ ի՞նչ է տվել սովետական իշխանությունը կանանց, սովետական կնոջ դերը սոցիալիստական շինարարության մեջ, պարտիայի և սովետական պետության հոգատարությունը մայրերի և երեխաների նկատմամբ, և այլ հանրամատչելի զրույցներ զանազան թեմաներով։ Կանանց շրջանում քաղաքական աշխատանք տանելու



համար որպես ագիտատորներ պետք է ընտրել կին ակտիվիստներին։

Պարտիական կազմակերպությունների աշխատանքի կարևոր բնագավառ է հանդիսանում Հայրենիք վերադարձած երիտասարդության քաղաքական դաստիարակությունը։ Հարկավոր է շրջապատել նրանց ամենօրյա հոգատարությամբ և ուշադրությամբ։ Երիտասարդության համար պետք է կազմակերպել ժողովներ՝ քաղաքական զեկուցումներով և զրույցներով։ Անցկացվող զրույցներում անհրաժեշտ է պատմել Հայրենական պատերազմի տարիներին սովետական երիտասարդության անցած մարտական ուղու մասին, նոր հնգամյա պլանի կատարմանը երիտասարդության մասնակցության մասին, ՍՍՌՄ քաղաքացիների իրավունքների և պարտականությունների մասին։ Արտասահմանից եկած երիտասարդությանը պետք է լայնորեն ընդգրկել ձեռնարկությունների և կոլխոզների հասարակական-քաղաքական կյանքում, սպորտային կազմակերպությունների աշխատանքներում, ինքնագործ խմբակներում, իսկ նրանցից լավագույններին ընդգրկել Համ ԼԿԵՄ-ի շարքերը։

Պարտիական կազմակերպությունները պարտավոր են լուրջ ուշադրություն դարձնել նոր քաղաքացիների կուլտուրական սպասարկմանը՝ կոլեկտիվ հաճախումներ թատրոն, կինո, համերգներ, էքսկուրսիաներ թանգարաններում և ցուցահանդեսներում, նրանց ընդգրկումը բանվորական և կոլխոզային ժողովներում, քաղաքական զեկուցումների կազմակերպում ամբողջ բնակչության համար, նոր քաղաքացիների լայն ընդգրկումը սովետական, պրոֆմիութենական կազմակերպություններում և աշխատավորների ընկերություններում։

Բավական շատ անգրագետներ և կիսագրագետներ կան վերադարձած քաղաքացիների մեջ. խնդիրը կայանում է նրանում, որպեսզի կարճ ժամանակամիջոցում վերացվի նրանց անգրագիտությունը և կիսագրա-

գիտությունը, ընդգրկելով նրանց գիշերային և հանրակրթական դպրոցներում ու խմբակներում։

Կարևոր նշանակություն ունի նաև վերադարձած քաղաքացիներին պարբերական գրականությամբ և առաջին հերթին թերթերով ապահովելու հարցը։ Նոր քաղաքացիների մեջ հանրամատչելի գեղարվեստական, քաղաքական գրականության լայնորեն տարածումը խիստ անհրաժեշտ է։

Սովետական նոր քաղաքացիների քաղաքական դաստիարակության գործում խոշոր դեր ունի կատարելու մեր մամուլը։ Թերթերը պարտավոր են սիստեմատիկորեն տպագրել հոդվածներ և թղթակցություններ Հայրենիք վերադարձած հայերի աշխատանքային և հասարակական գործունեության մասին, օգտագործելով այդ նպատակի համար ձեռնարկություններում և կոլխոզային արտադրության մեջ լավագույն աշխատանքի բազմաթիվ փաստերը։

Մեր ռեսպուբլիկայի բոլոր քաղաքացիների հետ միասին Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի առաջիկա ընտրություններին մասնակցելու են նաև Հայրենիք վերադարձած աշխատավորները։ Վերադառնալով Հայրենիք, նրանք առաջին անգամ, բոլոր քաղաքացիների հետ համահավասար, իրավունք են ստացել ընտրելու և ընտրվելու Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետում։ Աշխատավորների նախընտրական ժողովներում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու են առաջադրվել Սովետական Հայաստան վերադարձած բժիշկ Մանուշակյանը, կոլխոզնիկ Խաչատրյանը, բանվոր Կարապետյանը։ Տարագրության մեջ նրանք այդ մասին երազել իսկ չէին կարող։

Սովետական նոր քաղաքացիները դեռ նորերս վերադառնալով Հայրենիք ոչ միշտ կարող են ճիշտ պատկերացում ունենալ մեր երկրում հաստատված սովետական դեմոկրատիայի մասին, որպես դեմոկրատիայի առավել լիակատար և բարձրագույն ձևի։ Այդ պատճա-



ռով պարտիական կազմակերպությունները պարտավոր են հատուկ ուշադրություն դարձնել Հայրենիք վերադարձած հայերի մեջ կատարվող ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքին։ Հարկավոր է պատմել սովետական նոր քաղաքացիներին ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիաների հիմնական սկզբունքների մասին, քաղաքացիների իրավունքների և պարտականությունների մասին, բացատրել մեր Կոնստիտուցիայի և կապիտալիստական երկրների կոնստիտուցիաների միջև եղած տարբերությունները, սովետական ընտրական սիստեմի և բուրժուական ընտրական սիստեմների տարբերությունները։ Ագիտատորները պետք է պատմեն ընտրողներին մեր երկրի կյանքի մասին, տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում Սովետական Հայաստանի ձեռք բերած հաջողությունների մասին, միջազգային դրության մասին, արտասահմանում ապրող աշխատավորության վիճակի մասին և այլն։ Մասսայական-բացատրական աշխատանքներում պետք է օգտագործել Հայրենիք վերադարձած ակտիվիստներին, կազմակերպել նրանց ելույթները Հայրենիք վերադարձած հայերի ժողովներում։

Երևան քաղաքի ձեռնարկություններում ագիտատորները Ստալինյան Կոնստիտուցիան և ընտրական Օրենքը բացատրելու ուղղությամբ խոշոր աշխատանք են կատարում Հայրենիք վերադարձած հայերի շրջանում։ Առաջին կոշիկի գործարանում նրանց համար կազմակերպված է խմբակ, ուր ուսումնասիրում են Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրությունը։ Ագիտատորների թվում են ցեխային վարպետներ՝ Ա. Դարբինյանը, Օ. Մարգարյանը և ուրիշները։

Ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքների կազմակերպման գործում ամենակարևոր տեղն է գրավում դեպուտատության համար առաջադրված թեկնածուների օգտին տարվող ագիտացիան։ Հարկավոր է

ընտրող նոր սովետական քաղաքացիներին ծանոթացնել թեկնածուների կենսագրություններին, նրանց հասարակական-քաղաքական և աշխատանքային գործունեությանը, կազմակերպել թեկնածուների հանդիպումներ իրենց ընտրողների հետ։

Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստումը առաջ բերեց աշխատավորների արտադրական ակտիվության նոր վերելք։ Հոկտեմբերյանի շրջանում Վորոշիլովի անվան սովխոզի բանվորներ Զ. Փոթիկյանը, Ա. Օհանյանը, Կ. Մարտիրոսյանը արտադրական պլանը կատարում են 120—150 տոկոսով։ Արտադրական մեծ ակտիվություն են հանդես բերում Հայրենիք վերադարձած երիտասարդ քաղաքացիները։ Երիտասարդ ընտրողների հավաքույթից հետո, որտեղ զեկուցումներ լսվեցին սովետական ընտրական օրենքի մասին, հայ և ռուս ժողովուրդների դարավոր բարեկամության մասին, Մեխանիկական գործարանի փականագործներ՝ Ա. Իսրայելյանը, Ա. Օհանյանը պարտավորություններ ստանձնեցին և արդեն կատարում են պլանները 300 տոկոսով։

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ նոր քաղաքացիների մեջ խորացրած բացատրական-քաղաքական աշխատանքով ապահովել նրանց ակտիվ մասնակցությունը մեր ռեսպուբլիկայի պետական իշխանության գերագույն օրգանի առաջիկա ընտրություններին։

Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

---

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՎՖ 00043. պատվեր 50, տիրաժ 8500. ստորագրված է տպագրության 16/I 1947 թ.
ՀՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2, տպարան, Երևան